*ՋՕՐ․ ՔՕՆՏԻԼԻՍ ԱՐՔԱՅԱԿԱՆ.*— Աթէնքէն կը հեռագրեն թէ պատերազ–մական նախարար Զօր․ Քօնտիլիս, որ ջերմ հանրապետական էր, յանկարծ փոխեց իր դիրքը եւ յայտարարեց թէ կ'ուզէ որ վերահաստատուի միապետու–թիւնը, իբրեւ միակ ելքը։ Այս յայտարարութիւնը բուռն զայրոյթ պատճառեց զօրավարին կուսակիցներուն, որոնք դաւաճան կը հռչակեն նախարարը։

*ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ԵՐԵՔ ԸՄԲՈՍՏ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԸ* ձերբակալուելով, Ա–թէնքէն դուրս հանուեցան։ Պիտի բանտարկուին զանազան վանքերու մէջ, իբ–րեւ պարզ աբեղաներ։ Իրենց կուսակիցները փայտէ խաչ մը բռնած, թափոր կազմեցին, բողոքելու համար, բայց ոստիկանութիւնը ցրուեց։

*ԻՐԱՆԻ ՇԱՀԸ* իր տարեկան գահաճառին մէջ գոհունակութեամբ յիշեց որ յունիս 8էն սկսեալ բոլոր նախարարները, երեսփոխանները եւ պաշտօնեաները եւրոպական գլխարկ կը գործածեն եւ ողջոյն կուտան գլխարաց։

*ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԵԱՆ* շաբաթական տեղեկագիրը 3225ի նուազում մը կը ցուցնէ անցեալ շաբթուան վրայ, նպաստընկալ գործազուրկներու թիւը իջած ըլլալով 414,844ի։

*ՌՄԲԱՁԻԳ ՕԴԱՆԱՒ* մը ջախջախուեցաւ Պոլսի մէջ։ Երկու հոգի մեռան։

■■■■■■■■■

## ԱԶԳԱՅԻՆ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՐԳԵՒՆԵՐԸ

Ազգ․ պարգեւախաղի 7րդ վիճակահանութիւնը տեղի ունեցաւ ուրբաթ գի–շեր։ Մեծ պարգեւը, 3,000,000 փրանք, շահեցաւ 0,928,866 թիւը։
թիւը։

Հետեւեալ վեց թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ մէկ միլիոն փրանք։ 0,116,019, 0,521,959, 0,709,876, 0,371,688, 0,665,079, 1,037,477։

Հետեւեալ վեց թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 500,000 փր․։ 0,195,842, 0,559,230, 0,792,522, 0,299,235, 0,585,751, 0,831,945։

7·371 վերջացող թիւերը շահեցան 100,000 փրանք։

7,311 վերջացող թիւերը շահեցան 50,000։

4,054 վերջացող թիւերը շահեցան 25,000 փրանք։

5,407 վերջացող թիւերը շահեցան 25,000 փրանք։

900 վերջացող թիւերը շահեցան 10,000 փրանք։

29 վերջացող թիւերը շահեցան 1000 փրանք։

1 վերջացող թիւերը շահեցան 100 փրանք։

*ԽՄԲ.*— *Յառաջ*ի միջոցաւ ծախուած հետեւեալ երկու թիւերը շահած են 100ական փրանք, 0,933,521 եւ 0,862,421։

---

### Ց. — Փարիզ եւ շրջականներ

Հ. Դ.

*ՓՐՈՓԱԿԱՆՏԻ Յանձնախումբի Նիստը տեղի պիտի ունենայ այս ՀԻՆԳՇԱԲԹԻ երեկոյ ժամը 8.30ին, 3ք, Ավընիւ կօպլէնի սըրճարանը։*

*Կը խօսի՝ ընկեր Ա. ԱՐԾՐՈՒՆԻ։ Նիւթ՝* «Խ. Հայաստանը»։

---







---

**ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է** *Ն. ՄԱՌԻ* չոգեհանգիստը որ տեղի պիտի ունենար այսօր, կիրակի փարիզի եկեղեցին մէջ։

*ԸՆԿ․ ԱՐԱՄ ՁՕՄԱՔԼԵԱՆԷ սոխրադարար կը խնդրուի իր հասցէն յայտնել «Յառաջ»ի վարչութեան։*



ՅՈԲԵԼԵԱՆ

ՏՕՔԹ. ՓԵԹԱԿ ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆԻ

Այս երեքշաբթի երեկոյ ժամը 9ին ՍՕՍԻԷԹԷ ՍԱՎԱՆԹԻ ՄԷՋ

կը նախագահէ՝ *Տօքթ. ՔՕԼՕԼԵԱՆ*

կը խօսին՝ *Տօքթ. ԹՈՐԳՈՄԵԱՆ* յոբելեարին կեանքը, *Տօքթ. Կ. ԽԱՆՃԵԱՆ* յոբելեարին գործը, *Տքթ. ԱԼԼԱՀՎԵՐՏԻ* ուղերձ։

խօսք կ'առնէ նաեւ *ՅՈԲԵԼԵԱՐԸ*։

Մուտքը՝ ազատ է։

**Հ. Մ. Ը. Մ.**

*(Անկէնի հայ ծնողներուն)*

Սկաուտ երէցներու Պատասխանատու վարիչ՝ Պ. Յարութիւն Յապաղեան նշանակուած է Անկէնի գայլիկներու վարիչ։

Կը խնդրուի ծնողներէն լաւագոյն ընդունելութիւն ցոյց տալ եւ կամ դիմել իրեն

Mr. Dabaghian, 4, Rue de Chemin de Fer. Enghien-le-Bains.

*(Կնիք)*




**Le Gérant: H. STEPHAN**

**17, Rue Damesme, PARIS (13)**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**




---

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (112)

# ԽԱՉԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ

Գրեց՝ ՐԱՖՖԻ

*Նա հրամայեց ցած թողնել սաղաւարի մուտքի վարագոյրը, որ ազատուի ճառագայթներից :—«Ուզում եմ մութ լինի ... միշտ մութ, որ ինչ որ ոչ ոք չտեսնի»։ Ես զարմացայ, թէ ինչն էր ստիպում նրան փախչել լոյսից, արդեօք ամօթը, որ նա քնի մէջ արել էր մի անմեղ խոստովանութիւն։ Այդ ենթադրութիւնը աւելի հաւանական երեւաց ինձ, երբ հարցրեց նա.—«Շատ ժամանակ է, որ դու այստեղ ես»։ — «Շատ ժամանակ չէ, կէս ժամ հազիւ կը լինի, լսեցի, որ քո քունը անհանգիստ է, ներս մտայ»։ — «Այո, ես անհանգիստ էի»... ասաց նա եւ հրամայեց, որ իրեն միայնակ թողնեմ։ Եւ դուրս եկայ, նստեցի սաղաւարի մուտքի մօտ։ Այնտեղ քնում էի ես ամէն գիշեր, այնտեղ ամբողջ գիշերը հսկում էի նրա վրայ, այնտեղից լըսում էի նրա դառն հառաչանքները եւ իմ սիրտը լցւում էր կրակով։ Բայց այն առաւօտ որքան երջանիկ էի ըղձում ինձ, որքան ուրախ էի ես. իմ հոգին փայլում էր անսահման բերկրութիւն։ Այն մի քանի խօսքերը, որ արտասանեց նա անգիտակցութեան մէջ, ինձ բաշխում էին աշխարհի բոլոր փառքերը։ «Երեւի, նա մտածում է իմ վրայ, որ ես նրա երազների առարկան եմ դարձել» — ասում էի ես, եւ այսքանով միայն ինձ բոլորովին բախտաւոր էի համարում։ Բայց ո՞վ կը մտածէր, որ այդ բախտաւորութիւնը երկար չէր տեւի...»։*

*« Այդ հոգեկան բերկրութեան մէջ էի ես, երբ մեր հիւրնկալի կրտսեր որդին մօտեցաւ, յայտնեց, որ իւր հայրը կանչում է ինձ։ Ես գնացի։ Ծերունին առանձնացած էր եւ, որպէս երեւում էր, պատուիրել էր՝ իւր մօտ ոչ ոքի չթողնեն։ Նա հարցրեց օրիորդի առողջութիւնը, յետոյ խնդրեց, որ նստեմ իւր մօտ։ Նա տխուր, մինոյն ժամանակ վրդովուած էր երեւում։ Կամենում էր մի բան խօսել, բայց դժուարանում էր։ Վերջապէս ասաց նա.*

*— «Այն օրից, որ դուք ոտք էք կոխել իմ տան շեմքի վրայ, ես ամենեւին չեմ հարցրել ձեզ, թէ ո՞վ էք դուք, որտեղից էք գալիս, կամ ո՞ւր էք գնում։ Ես այսքանով միայն ուրախ էի, որ իմ հացը բաժանում եմ Աստուծոյ հիւրերի հետ։*

*Բայց այժմ առանց հարցնելու եւս, ես գիտեմ, թէ դուք ով էք, եւ ում որդին է ձեր մանկահասակ ընկերը, որի հիւանդութիւնը նոյնքան ցաւ է պատճառում ինձ, որքան ձեզ։ Մենք, այս լեռների բնակիչներս, սովորութիւն ունենք, ոչ միայն հիւրասիրելու մի օտարականին, որ մեր տան ծածքի տակ օթեւան է խնդրում, այլ փտանգի ժամանակ մեր պարտքն ենք համարում եւ պաշտպանել նրան ամէն չար պատահարներից։ Մեր տունը մտնողը, ինչ մարդ էլ եւ լինէր նա, ինչ յանցանք էլ որ գործած լինէր, դարձեալ մեր օգնութիւն է վայելում։ Այդ մասին կարող էք բոլորովին ապահով լինել ...»։*

*« Վերջին խօսքերի միջոցին ծերունին զգուշութեամբ նայեց իւր չուրջը, մի գուցէ մի ուրիշը լսէր նրան։ Ես արդէն նախազգուշակում էի, թէ նրա յառաջաբանը ինչով պէտք էր վերջանար, եւ չսխալուեցայ։ Մեզ որոնում էին...»։*

*— « Այս որպէս ես վերադարձայ մեր տանուտէրի մօտից, — շարունակեց նա :— Տանուտէրի հաւաքել էր իւր մօտ մեր չէնի բոլոր ծերերին եւ կարդաց գաւառապետի հրամանը։ Նըրա մէջ գրուած էր, թէ Ղարադաղի մելիքի աղջիկը փախել է իւր ծառայի հետ եւ անցել են մեր կողմերը։ Հրամայուած էր՝ որտեղ եւ գտնելու լինին նրանց, յանձնեն կառավարութեան ձեռքը, որ յետ ուղարկեն Պարսկաստան։ Հրամանի մէջ ծանր պատիժ եւ տուգանք էր նշանակուած, եթէ մէկը կը համարձակուի թագցնել նըրանց իւր մօտ։ Ես տարակոյս չունեմ, որ դուք եւ ձեր ուղեկիցը միեւնոյն անձնաւորութիւններն էք, որ ցոյց է տրուած հրամանի մէջ»։*

*— «Այո, մենք ենք. — պատասխանեցի ես, առանց որ եւ իցէ կասկածանքի, առանց թագցնելու»։*

(Շար.)

